Պրոլետարնե՛ր բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# Ագիտատորի ԲԼՈԿՆՈՏ

№ 19 ՀՈԿՏԵՄԲԵՐ 1953

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ




Խմբագրության հասցեն.— Երևան, ՀԿՊ Կենտկոմ, Պրոպագանդայի և ագիտացիայի բաժին, Հեռախոս՝ 2—52—78


# ԼԱՅՆՈՐԵՆ ԾԱՎԱԼԵԼ ՆԱԽԱՀՈԿՏԵՄԲԵՐՅԱՆ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՄՐՑՈՒԹՅՈՒՆԸ

*Մոտենում է Հոկտեմբերյան սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի 36-րդ տարեդարձը։ Մեր մեծ երկրի աշխատավորները, ինչպես միշտ, այնպես էլ այս տարի աշխատանքային նոր հաջողություններով են նշանավորում փառապանծ տարեդարձը։*

*Սովետական ժողովուրդը Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ մեծագույն հաջողությամբ կենսագործում է ՍՄԿՊ 19-րդ համագումարի, ՍՍՌՄ Գերագույն Սովետի 5-րդ սեսիայի և պարտիայի Կենտրոնական Կոմիտեի Սեպտեմբերյան պլենումի պատմական որոշումները, որոնք լայն հնարավորություններ են ստեղծում արդյունաբերության, գյուղատնտեսության, գիտության ու կուլտուրայի ծաղկման և զարգացման համար։ Այդ պատմական որոշումների կենսագործումով է՛լ ավելի կբարելավվի աշխատավորների նյութական բարեկեցությունը։*



Մեծ ռևոլյուցիայի պանծալի 36-րդ տարեդարձը ամբողջ սովետական ժողովրդի հետ միասին արժանավայել կերպով են դիմավորում նաև Սովետական Հայաստանի աշխատավորները։

Ի պատիվ Հոկտեմբերյան սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի, մեր ռեսպուբլիկայի արդյունաբերական ձեռնարկություններում, մեքենա-տրակտորային կայաններում, կոլտնտեսություններում և սովխոզներում ծավալվում է սոցիալիստական մրցություն։

Արտադրական ձեռնարկությունների կոլեկտիվները մտնելով նախահոկտեմբերյան սոցիալիստական մրցության մեջ, պարտավորվում են տարեկան պլանները կատարել ժամկետից շուտ, բարձրացնել արտադրանքի որակը և հումքի, էլեկտրաէներգիայի տնտեսման հաշվին ավելացնել արտադրանքի թողարկումը։

Մտնելով նախահոկտեմբերյան սոցիալիստական մրցության մեջ, Մեղրու պահածոների գործարանի կոլեկտիվը պարտավորություն է ստանձնել տարեկան արտադրական պլանը կատարել Հոկտեմբերյան սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի 36-րդ տարեդարձի օրը՝ նոյեմբերի 7-ին։ Գործարանի կոլեկտիվը միաժամանակ պարտավորվել է պլանից



դուրս երկրին տալ 200 հազար տուփ պահածո։

Ստանձնելով սոցիալիստական նոր պարտավորություններ, գործարանի կոլեկտիվը սեպտեմբեր ամսվա պլանը կատարեց 123,8 տոկոսով։ Հատկանշականն այն է, որ գործարանում անընդհատ բարձրանում է արտադրանքի որակը։

Պարտկազմակերպության բյուրոյի օգնությամբ տեղի ագիտկոլեկտիվը սիստեմատիկ և մտածված աշխատանք է կատարում մրցությունն ավելի գործարար և արդյունավետ դարձնելու համար։ Ագիտատորներին պարբերաբար հանձնարարություն է տրվում՝ ցեխերում ագիտացիոն զրույցներ անցկացնել ստանձնած պարտավորություններն անթերի կատարելու մասին։ Նրանք արդեն մի շարք զրույցներ են անցկացրել սոցիալիստական մրցության առաջավորների աշխատանքի դրական փորձի վերաբերյալ։

Մեր օրերում սոցիալիստական մրցությունը դարձել է լավագույն միջոց թողարկվող արտադրանքի որակը բարձրացնելու, արտադրանքի ինքնարժեքն իջեցնելու, ներքին ռեզերվները լրիվ օգտագործելու, խնայողության խստագույն ռեժիմ կիրառելու բնագավառում պարտիայի և կառավարության կոչ-

մից առաջադրվող խնդիրները պատվով կատարելու համար։

Երևանի Կլարա Ցետկինի անվան առաջին կարի ֆաբրիկայի բանվորներն ու բանվորուհիները մտնելով նախահոկտեմբերյան սոցիալիստական մրցության մեջ, պայքարում են գերազանց որակի արտադրանք թողարկելու համար։ Այժմ ֆաբրիկայում բազմաթիվ ագրեգատներ առաջին տեսակի արտադրանքի թողարկումը հասցրել են 98—99 տոկոսի, նախատեսված 94 տոկոսի փոխարեն։ Կտոր ձևող բանվորների շրջանում մրցություն է ծավալված առանց մնացորդի աշխատելու համար։

Ֆաբրիկայի նախապատրաստական ցեխը և ձևարանը ուժեղացնելով պայքարը խնայողության խստագույն ռեժիմ կիրառելու համար, տնտեսելով յուրաքանչյուր սանտիմետր կտորը, հասել են նշանակալից հաջողությունների։ Անցած 7 ամսվա ընթացքում նրանք տվել են 304 հազար ռուբլու բրդյա և բամբակյա կտորեղենի խնայողություն։ Խնայված կտորեղենի հաշվին, պլանից դուրս, բաց է թողնված տղամարդու 400 հատ կոստյում, 250 հատ վերարկու և 1200 հատ զանազան հագուստ։

Կոմունիստական պարտիան և Սովետա-



կան կառավարությունը միշտ էլ խոշոր ուշադրություն են դարձրել աշխատավորների լայն շրջանում սոցիալիստական մրցություն կազմակերպելու վրա, այն բանի վրա, որ է՛լ ավելի ուժգին ծավալվի ու զարգանա մասսաների ինքնագործունեությունը, նրանց նախաձեռնությունը՝ աշխատանքի արտադրողականությունը բարձրացնելու, ժողովրդական տնտեսության հետագա զարգացման գործում նոր և ավելի մեծ հաջողություններ ձեռք բերելու համար։

Երևանի Ս. Մ. Կիրովի անվան գործարանը խոշոր հաջողությունների է հասել նորարարների ու ռացիոնալիզատորների մասսայական շարժման շնորհիվ։ Այս տարվա 9 ամսում գործարանում արվել է 650 նորարարական առաջարկություն, որից 480-ը արմատավորվել է արտադրության մեջ։ Այդ նորարարական առաջարկությունները գործարանին կտան տարեկան երկու և կես միլիոն ռուբլու օգուտ։

Այժմ գործարանի բանվորներն ու ծառայողները, ինժեներա-տեխնիկական աշխատողները բուռն խանդավառությամբ մտել են նախահոկտեմբերյան սոցիալիստական մրցության մեջ։ Նրանք պարտավորություն են ստանձնել ժամկետից շուտ կատարել տա-

բեկան արտադրական պլանը, հումքի և այլ նյութերի տնտեսման հաշվին տալ 5 միլիոն ռուբլու լրացուցիչ արտադրանք և խնայողության ռեժիմի կիրառման միջոցով՝ երկու և կես միլիոն ռուբլու արտապլանային կուտակում։

Նախահոկտեմբերյան սոցիալիստական մրցության մեջ մտնելով՝ գործարանի կոլեկտիվը սեպտեմբեր ամսվա պլանը կատարեց 120,4 տոկոսով։ Կիրովցիները ջանք չեն խնայի ստանձնած բոլոր պարտավորությունները անթերի կատարելու համար։

Որպեսզի նախահոկտեմբերյան սոցիալիստական մրցությունը դառնա ավելի մասսայական և ավելի արդյունավետ, ագիտատորները նորարարական յուրաքանչյուր առաջարկություն, առաջավոր յուրաքանչյուր փորձ պետք է լայնորեն մասսայականացնեն ցեխերում ու ազրեգատներում և աշխատեն, որ այն արագ ներդրվի արտադրության մեջ։

Ագիտատորը, ժողովրդական տնտեսության ինչ բնագավառում էլ որ աշխատի, պետք է խորը թափանցի սոցիալիստական մրցություն կազմակերպելու մանրամասնությունների մեջ, ամեն օր հետաքրքրվի և իմանա, թե ով ինչպես է կատարում ստանձ-



նած պարտավորությունը, մրցողներն ինչ դժվարությունների են հանդիպում իրենց խոստումն անթերի կատարելու գործում և գործնականում ինչպիսի օգնություն կարելի է ցույց տալ նրանց, որպեսզի նրանք սոցիալիստական մրցության մեջ հաղթող լինեն։

Անհրաժեշտ է, որ պարտիական և պրոֆմիութենական կազմակերպությունները սիստեմատիկաբար ձեռնարկության կոլեկտիվի ընդհանուր ժողովներում ամփոփեն նախահոկտեմբերյան սոցիալիստական մրցության արդյունքները, մասսայական խրախուսանքի արժանացնեն լավագույն աշխատողներին, տեղյակ պահեն բոլոր աշխատողներին գործարանի, կոլեկտիվի, ցեխի առջև դրված խնդիրների մասին, այն մասին, թե առաջիկայում ինչ է անելու յուրաքանչյուր բանվոր, որպեսզի տվյալ ձեռնարկությունը արժանավայել կերպով դիմավորի Հոկտեմբերյան սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի 36-րդ պանծալի տարեդարձը։

Նախահոկտեմբերյան սոցիալիստական մրցության այս օրերին աշխատանքային անսահման խանդավառությամբ են համակված ռեսպուբլիկայի կոլտնտեսային աշխա-

տավորները, ՄՏԿ-ների մեխանիզատորները։ Բազմաթիվ կոլտնտեսություններ հաջողությամբ ավարտելով հացահատիկային կուլտուրաների բերքահավաքը, լրիվ չափով կատարել են պետական պարտավորությունները։

Ռեսպուբլիկայի կոլտնտեսություններում ուժեղ թափով առաջ է գնում բամբակի, խաղողի, ծխախոտի, բանջարաբոստանային և մյուս կուլտուրաների բերքահավաքը, ինչպես նաև աշնանացանի աշխատանքները։

Մտնելով նախահոկտեմբերյան սոցիալիստական մրցության մեջ, Հոկտեմբերյանի շրջանի կոլտնտեսային աշխատավորությունը ուժ և եռանդ չի խնայում ստանձնած պարտավորությունները գերակատարելու համար։ Շրջանի կոլտնտեսությունները յուրաքանչյուր օր պետությանն են հանձնում հարյուրավոր տոննա բամբակի հումք։

Հոկտեմբեր ավանի Լենինի անվան կոլտնտեսությունում լայն մրցություն է ծավալվել հեկտարից 30 ցենտներ բամբակ ստանալու համար։ 500 բամբակագործներ մրցում են միմյանց հետ բամբակը ժամանակին և անկորուստ հավաքելու համար։ Շատ կոլտնտեսականներ օրվա առաջադրանքը կատարում են 150—200 տոկոսով։ Կոլտնտե-



սությունը ամեն օր ավելի քան 30 տոննա բամբակ է հավաքում և հանձնում մթերման կայան։

Կատարելով նախահոկտեմբերյան սոցիալիստական մրցությամբ ստանձնած պարտավորությունները, Արտաշատի շրջանի կոլտնտեսականներն աչքի ընկնող հաջողությունների են հասել այգեկութի աշխատանքները բարձր կազմակերպվածությամբ անցկացնելու գործում։ Գետաշենի կոլտնտեսականները բարելավելով խաղողի մշակությունը, այժմ հեկտարից ստանում են 100 ցենտներ միջին բերք, իսկ առանձին այգեմասերից՝ մինչև 200 ցենտներ բերք։ Մրցողները բոլոր կոլտնտեսականները օրական հավաքում են 680—700 կիլոգրամ խաղող։

Գյուղական ագիտատորների խնդիրն է կոլտնտեսային աշխատավորությանը էլ ավելի խորն ու բազմակողմանիորեն պարզաբանել մեր երկրի գյուղատնտեսության զարգացման հոյակապ ծրագիրը՝ ՍՄԿԿ Կենտկոմի Սեպտեմբերյան պլենումի որոշումները և պլենումի որոշմանը համապատասխան պարտիայի ու կառավարության կողմից ընդունված միջոցառումները։

# ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՊԱՐՏԻԱՅԻ ՀԱՎԱՏԱՐԻՄ ՕԳՆԱԿԱՆՆ ՈՒ ՄԱՐՏԱԿԱՆ ՌԵԶԵՐՎԸ

(ՀԱՄԼԿԵՄ 35-ամյակի առթիվ)

Կ. ՈՒԴՈՒՄՅԱՆ

*Այս տարվա հոկտեմբերի 29-ին լրանում է Համամիութենական Լենինյան Կոմունիստական Երիտասարդության Միության ստեղծման երեսուն հինգ տարին։*

*Ծնվելով Հոկտեմբերյան սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի և Սովետական իշխանության հաղթանակի համար մղված հերոսական մարտերում, կոմերիտմիությունը Կոմունիստական պարտիայի իմաստուն և փորձված ղեկավարությամբ իր գոյության երեք ու կես տասնամյակների ընթացքում անցել է փառապանծ ուղի—պրոլետարական երիտասարդության սակավաթիվ ու ցրված կազմակերպություններից և խմբակներից դառնալով սովետական երիտասարդության բազմամիլիոնանոց առաջավոր ջոկատը, պարտիայի հավատարիմ օգնականն ու մարտական ռեզերվը։*



*Պարտիայի ու Հայրենիքի նկատմամբ իր անսահման նվիրվածությամբ, իր հայրենասիրական անձնվեր գործունեությամբ, Համ. ԼԿԵՄ-ը նվաճել է սովետական ժողովրդի սերն ու հարգանքը։ Իր բոլոր հաջողությունների ու նվաճումների համար կոմերիտմիությունը պարտական է կոմունիստների մեծ պարտիային, որի ղեկավարությունը Համ. ԼԿԵՄ-ի ուժի ու ամրության աղբյուրն է։*

*Կոմունիստական պարտիայի և Սովետական պետության մեծ հիմնադիր Վ. Ի. Լենինը միշտ խորապես հավատացել է պրոլետարական երիտասարդության ստեղծագործական ուժերին ու ռևոլյուցիոն ընդունակություններին։*

***

*Ռուսաստանում երիտասարդության ռևոլյուցիոն շարժման համար բացառիկ նշանակություն ունեցավ Կոմունիստական պարտիայի 1917 թվականի օգոստոսին տեղի ունեցած 6-րդ համագումարը։ Համագումարը սահմանեց, որ երիտասարդության միությունները պետք է լինեն պարտիայի գաղափարական ղեկավարությամբ աշխատող ինքնուրույն կազմակերպություններ։ Պրոլե-*

տարական երիտասարդության շարժումն ավելի մեծ թափ ստացավ Հոկտեմբերյան սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի հաղթանակից հետո։ 1918 թվականի հուլիսին պարտիայի Կենտրոնական Կոմիտեն ստեղծեց բանվորա-գյուղացիական երիտասարդության միությունների համառուսական առաջին համագումարի հրավիրման կազմակերպական բյուրո։

Եվ երբ պարտիայի ջանքերով պատրաստվեց այն հողը, որի վրա միայն կարող էր աճել կոմերիտմիությունը, 1918 թվականի հոկտեմբերի 29-ին բացվեց բանվոր և գյուղացի երիտասարդության միությունների առաջին համագումարը, որն ընդունեց միության ծրագիրը։ Համագումարն անցավ պարտիայի Կենտրոնական Կոմիտեի անմիջական ղեկավարությամբ։

Համագումարի աշխատանքին մեծ ուշադրություն էր նվիրում Վ. Ի. Լենինը։ Նրա հանձնարարությամբ համագումարում ընթացիկ մոմենտի մասին զեկուցեց ընկեր Յարոսլավսկին։ Կոմունիստական երիտասարդական միությունների կազմակերպման ուղղությամբ վիթխարի աշխատանք կատարեցին պարտիայի ականավոր գործիչները։ Անդրկովկասում ռևոլյուցիոն երիտասարդու-



թյան առաջին կազմակերպությունները ստեղծեցին ընկերներ Գ. Կ. Օրջոնիկիձեն և Ա. Ի. Միկոյանը։

Կոմերիտմիության ստեղծումը նախապատրաստված էր պրոլետարական երիտասարդության ռևոլյուցիոն դաստիարակության, համախմբման ուղղությամբ պարտիայի կատարած բազմամյա աշխատանքով։

Կոմերիտմիությունը իր ստեղծման առաջին իսկ օրից դարձավ պարտիայի հավատարիմ օգնականը, անվերապահորեն հռչակելով իր պատրաստակամությունը՝ տալու իր բոլոր ուժերը պարտիայի գաղափարների համար մղվող պայքարին։

Պարտիայի կոչով կոմերիտմիությունը անձնվիրաբար մասնակցեց սոցիալիստական Հայրենիքի պաշտպանության գործին։ Սովետների երիտասարդ ռեսպուբլիկայի համար մղած ճակատամարտերում հազարավոր պատանիներ ու աղջիկներ ցույց տվեցին հերոսության, արիության և խիզախության հրաշքներ։

Հայրենիքը բարձր գնահատեց քաղաքացիական պատերազմի ռազմաճակատներում կոմերիտմիության ցույց տված մարտական արիությունը և նրան 1928 թվականին, Կար-

միր Բանակի տասնամյակի առթիվ, պարգևատրեց Կարմիր Դրոշի շքանշանով։

Կոմերիտմիության պատմության մեջ կարևորագույն ուղենիշ հանդիսացավ ՌԿԵՄ 3-րդ համագումարը, որտեղ Վլադիմիր Իլյիչը հանդես եկավ «Երիտասարդության միությունների խնդիրները» պատմական ճառով, որը հանդիսանում է երիտասարդության կոմունիստական դաստիարակության մարտական ծրագիր։

Մեծ առաջնորդի ճառում լրիվ չափով և սպառիչ պարզությամբ որոշված են կոմերիտմիության աշխատանքի խնդիրներն ու ուղղությունը։

Կատարելով Իլյիչի պատգամները, կոմերիտականներն ու արտամիութենական երիտասարդները ակտիվ մասնակցություն ունեցան երկրի ժողովրդական տնտեսության արագ վերականգնման և հետագա զարգացման գործին։ Չկա պետական, տնտեսական ու կուլտուր-դաստիարակչական գործունեության այնպիսի մի բնագավառ, որտեղ կոմերիտականները չլինեն առաջին շարքերում։ Նրանք հսկայական աշխատանք կատարեցին երկրի ինդուստրացման ու գյուղատնտեսության կոլեկտիվացման պարտիայի քաղաքականությունը կենսագործելու համար։ Լենին-



յան կոմերիտմիությունն իր ամբողջ եռանդը և ուժն ի սպաս դրեց, որպեսզի մեր Հայրենիքը պատմական ամենակարճ ժամանակամիջոցում դառնա սոցիալիստական հզոր տերություն։ ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման հնգամյակների կատարման համար ծավալված համաժողովրդական սոցիալիստական մրցության մեջ կոմերիտմիությունը հանդես եկավ բազմաթիվ արժեքավոր նախաձեռնությամբ և հերոսական գործերով, որի համար և 1931 թվականին պարգևատրվեց Աշխատանքային Կարմիր Դրոշի շքանշանով։ Կոմերիտմիությունը բարձր պահեց պարտիայի օգնականի և ռեզերվի պատիվը նաև խաղաղ աշխատանքի ժամանակաշրջանում։

Պարտիայի ղեկավարությամբ կոմերիտմիությունը հսկայական աշխատանք կատարեց երիտասարդ սերնդի կոմունիստական դաստիարակության ուղղությամբ, սովետական երկրի պատանիներին ու աղջիկներին դաստիարակելով ջերմ հայրենասիրության ոգով։ Սովետական երիտասարդության այս հիանալի հատկությունները վառ կերպով դրսևորվեցին հիտլերյան Գերմանիայի դեմ մեր ժողովրդի մղած Հայրենական Մեծ պատերազմում։

Պատերազմը հանդիսացավ մեր երիտասարդության հոգեկան ու ֆիզիկական բոլոր ուժերի ծանր ստուգումը, պատմական խիստ քննություն կոմերիտմիության համար։ Սովետական երիտասարդությունը, Լենինյան կոմերիտմիությունը, պատվով բռնեցին այդ քննությունը։ Կոմունիստական պարտիայի կոչով սովետական երկրի կոմերիտականներն ու բոլոր երիտասարդները բացառիկ միասնությամբ ոտքի ելան պաշտպանելու Սովետական Հայրենիքը։

Սովետական Հայրենիքի պատվի, ազատության և անկախության համաժողովրդական պայքարում կոմերիտականներն ու երիտասարդները ցուցաբերեցին մասսայական հերոսության, անձնազոհության, արիության չտեսնված օրինակներ։ ՍՍՌՄ Զինված ուժերի շարքերում գտնված ավելի քան 3 միլիոն 500 հազար կոմերիտականներ պարգևատրվեցին շքանշաններով և մեդալներով, իսկ 3 հազար 500 կոմերիտականներ արժանացան Սովետական Միության Հերոսի բարձր կոչման։

Կոմունիստական պարտիան ըստ արժանվույն գնահատեց կոմերիտմիության մատուցած մեծ ծառայությունը Հայրենիքին։ 1945 թվականի հունիսին կոմերիտմիությունը պարգևատրվեց Լենինի շքանշանով։



Այդ բարձր պարգևին նա արժանացավ աճող սերնդի կոմունիստական դաստիարակության ուղղությամբ իր կատարած հսկայական աշխատանքի համար, այն բանի համար, որ ՀամԼԿԵՄ շարքերում միավորված երիտասարդ հայրենասերների բազմամիլիոնանոց բանակը անձնուրաց կերպով է աշխատել իր Հայրենիքի բարօրության համար։

Հետպատերազմյան տարիներին կոմերիտականների բազմամիլիոնանոց բանակը սովետական ամբողջ ժողովրդի հետ միասին ձեռնամուխ եղավ մեր երկրի ժողովրդական տնտեսության վերականգնման ու հետագա զարգացման մեծ աշխատանքներին։

Կոմերիտմիության կյանքում նշանավոր իրադարձություն հանդիսացավ ՀամԼԿԵՄ 30-ամյակը։ Այդ օրը հրապարակվեց ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահության Հրամանագիրը՝ Համամիութենական Լենինյան Կոմունիստական Երիտասարդության Միությանը Լենինի շքանշանով պարգևատրելու մասին։

Մեր երկրի կոմերիտականների ու երիտասարդների համար ոգեշնչման իսկական աղբյուր հանդիսացավ ՍՄԿՊ Կենտկոմի ողջույնը՝ ուղղված Լենինյան Կոմերիտմիությանը նրա 30-ամյակի կապակցությամբ։

Իր ողջույնում ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեն համոզմունք հայտնեց, որ Լենինյան կոմերիտմիությունը առաջիկայում նույնպես ազնվորեն կկատարի Հայրենիքի առջև իր պարտքը և երիտասարդության կոմունիստական շարժման պատմության մեջ կգրի նորանոր փառավոր էջեր։

Կոմերիտականներն ու երիտասարդները բարձր պահելով պարտիայի վստահությունը, քայլում են կոմունիզմ կառուցողների առաջին շարքերում։ Կոմերիտական կազմակերպությունների համար աշխատանքի մարտական ծրագիր հանդիսացավ Սովետական Միության Կոմունիստական պարտիայի 19-րդ համագումարի որոշումները, որոնց կենսագործման համար նրանք մոբիլիզացնում են երիտասարդության ամբողջ ուժերը։ Ներկայումս կոմերիտական կազմակերպությունները պայքար են ծավալել մեր երկրի ժողովրդական տնտեսության զարգացման անհետաձգելի խնդիրների լուծման համար, որոնք շարադրված են ՍՍՌՄ Գերագույն Սովետի 5-րդ սեսիայի որոշումների, սեսիայում արտասանած ընկեր Գ. Մ. Մալենկովի ճառի և ՍՄԿՊ Կենտկոմի Սեպտեմբերյան պլենումի պատմական որոշումների մեջ։

Արդյունաբերական ձեռնարկությունների կոմերիտական կազմակերպությունների կա-



ռևորագույն խնդիրն է՝ լայնորեն ծավալել սոցիալիստական մրցությունը երիտասարդ բանվորների շրջանում, ակտիվորեն մասնակցել պետական պլանների անթերի կատարման գործին, հետևողականորեն պայքարել աշխատանքի արտադրողականության բարձրացման և արտադրանքի ինքնարժեքի իջեցման, արտադրության ներքին ռեզերվների հայտնաբերման և օգտագործման, արտադրանքի որակի բարձրացման, հումքի խնայողության, տեխնիկային գերազանց տիրապետելու համար։

ՍՄԿՊ Կենտկոմի Սեպտեմբերյան պլենումի որոշումները մեծ ու պատասխանատու խնդիրներ են դնում կոմերիտական կազմակերպությունների առջև։ Կոլտնտեսությունների, սովխոզների, ՄԿՏ-ների կոմերիտական կազմակերպությունները գյուղատնտեսության հետագա զարգացման համար մղվող պայքարում պետք է ավելի ակտիվորեն օգնեն պարտիական կազմակերպություններին, ապահովեն բոլոր կոմերիտականների ու երիտասարդների ներգրավումը սոցիալիստական մրցության մեջ, հանդես գան արտադրության մեջ աշխատանքի առաջավորների, գյուղատնտեսական գիտության և պրակտիկայի նորագույն նվաճումների արմատավորման նախաձեռնողներ։

ՍՄԿՊ Կենտկոմի Սեպտեմբերյան պլենումի որոշման մեջ նշված է, որ գյուղատնտեսության մեջ ամենաանհետաձգելի խնդիրը անասնաբուծության արագ վերելքն է, որի ապահովման գործում խոշոր անելիքներ ունեն կոմերիտական կազմակերպությունները։ Նրանք պետք է ակտիվ մասնակցություն ցույց տան անասունների գլխաքանակի ավելացման, մթերատվության բարձրացման, անասնապահական բարեկարգ շենքերի կառուցման, կերի կայուն բազայի ստեղծման, կերահայթհայթման ու ֆերմաների աշխատատար պրոցեսների մեքենայացման գործին։

Կոմերիտական կազմակերպությունները պետք է գործնական օգնություն ցույց տան կոլտնտեսություններին, ՄՏԿ-ներին և սովխոզներին ստանալու կարտոֆիլի, բանջարեղենի, տեխնիկական և հացահատիկային կուլտուրաների բարձր բերք։

ՍՄԿՊ Կենտկոմի Սեպտեմբերյան պլենումը նշեց, որ գյուղատնտեսության հետագա զարգացման գործում կարևոր ու վճռական դեր ունեն կատարելու մեքենա-տրակտորային կայանները։

Կոմերիտական կազմակերպությունների առաջնահերթ խնդիրն է՝ բազմակողմանի աշխատանք կատարել երիտասարդ մեխանի-



զատորների մասնագիտական պատրաստականությունը, նրանց որակավորումը բարձրացնելու համար, որպեսզի ավելի արդյունավետ օգտագործվի ՄՏԿ-ների տեխնիկական կարողությունը։

Կոմերիտմիության պատմության բոլոր էտապներում նրա գլխավոր խնդիրն է եղել երիտասարդության դաստիարակությունը Մարքսի—Էնգելսի—Լենինի—Ստալինի մեծ ուսմունքի ոգով։

Կոմերիտական կազմակերպություններն այսուհետև ևս պատվով կկատարեն երիտասարդ սերունդը մարքսիզմ-լենինիզմի գաղափարներով դաստիարակելու իրենց խնդիրը, կապահովեն նրանց քաղաքական ուսուցման իդեական բարձր մակարդակը, վճռական պայքար կմղեն սովետական իդեոլոգիային խորթ ամեն տեսակ արտահայտությունների դեմ և սովետական երիտասարդներին կդաստիարակեն սոցիալիստական Հայրենիքի, Կոմունիստական պարտիայի նկատմամբ անսահման սիրո ու նվիրվածության ոգով, պրոլետարական ինտերնացիոնալիզմի և ՍՍՌՄ ժողովուրդների բարեկամության ոգով։

# ՍՈՎԵՏԱԿԱՆ ԱՌԵՎՏՐԻ ՆՈՐ ՎԵՐԵԼՔԻ ՀԱՄԱՐ

Մ. ԿԱՐԱՊԵՏՅԱՆ
Հայկական ՍՍՌ Առևտրի մինիստրի տեղակալ

Սովետական առևտուրը կարևոր դեր է խաղում մեր սոցիալիստական էկոնոմիկայում։ Նա տնտեսապես քաղաքը կապում է գյուղի հետ, նպաստում է սոցիալիստական արտադրական հարաբերությունների ամրապնդմանն ու զարգացմանը, բավարարում է քաղաքային և գյուղական բնակչության հարաճուն պահանջմունքները։ Նրա հիմնական խնդիրն է՝ սիստեմատիկորեն ապահովել սոցիալիստական հասարակության մշտապես աճող պահանջմունքները, բարձրացնել սովետական ժողովրդի կենսամակարդակը։

Մանրածախ գների ամենամյա սիստեմատիկ իջեցումը էական չափով բարձրացնում է աշխատավորների ռեալ աշխատավարձը, նրանց գնողունակությունը։

Բնակչության կենցաղի մեջ է մտնում այն-



պիսի ապրանքների գործածումը, ինչպիսիք են՝ սառցարանները, կենցաղային էլեկտրաջեռուցիչ գործիքները, փոշեկլանիչները, ինքնահոս գրիչները, ռադիոընդունիչները և այլն։

Սովետական Միության Կոմունիստական պարտիան, վարելով լենինյան-ստալինյան ազգային քաղաքականություն, ստեղծել է բոլոր պայմանները միութենական ռեսպուբլիկաների, այդ թվում նաև Սովետական Հայաստանի էկոնոմիկայի բուռն զարգացման համար։

Ռեսպուբլիկայի արդյունաբերության համախառն արտադրանքը 1952 թվականին, նախապատերազմյան 1940 թվականի համեմատությամբ, աճեց 4,2 անգամ։ Հայաստանի ձեռնարկությունները 1952 թվականին 35 անգամ շատ արտադրանք թողարկեցին, քան թողարկվել է 1913 թվականին։

Արդյունաբերության աճման, ժողովրդի բարեկեցության բարձրացման և եկամուտների ավելացման հետ մեկտեղ ընդլայնվում է ռեսպուբլիկայի ապրանքաշրջանառությունը։ Այսպես, 1950 թվականին ապրանքաշրջանառությունը գերազանցեց 1940 թվականի ապրանքաշրջանառության մակարդակը՝ ավելի քան երկու անգամ։ Ռեսպուբլիկա-

յի բնակչությանը 1952 թվականին 13,3 տոկոսով շատ ապրանք է վաճառվել, քան 1951 թվականին։ Հնգամյա պլանով նախատեսված է 1950 թվականի համեմատությամբ, 1955 թվականին պետական և կոոպերատիվ առևտրի մանրածախ ապրանքաշրջանառությունն ավելացնել մոտավորապես 70 տոկոսով։ Ընկեր Մալենկովը ՍՍՌՄ Գերագույն Սովետի հինգերորդ սեսիայում արտասանած ճառում հայտարարեց, որ մեզ մոտ կան բոլոր հնարավորությունները այդ առաջադրանքը կատարելու արդեն 1954 թվականին։

Հայկական ՍՍՌ-ում անընդհատ աճում է բնակչությանը վաճառվող պարենային և արդյունաբերական ապրանքների քանակը։ Այսպես, 1952 թվականին պետական և կոոպերատիվ խանութներում բնակչությանը ավելի շատ ապրանք է վաճառվել, քան 1940 թվականին, ընդորում միս և մսեղեն ավելի է վաճառվել 5 անգամ, կենդանական յուղ և ճարպեր՝ 6 անգամ, բուսական յուղ՝ 3 անգամ, շաքար՝ 3,3 անգամ, հրուշակեղեն՝ 1,8 անգամ, մակարոնեղեն՝ 4,3 անգամ, ձավարեղեն՝ 2 անգամ, պանիր՝ 3,3 անգամ, կաշվե կոշկեղեն՝ 1,2 անգամ, բամբակե գործվածքներ՝ 1,5 անգամ, բրդե գործվածք-



ներ՝ 2,5 անգամ, մետաքսե գործվածքներ՝ 3,5 անգամ։

Անհամեմատ ավելացել է ռադիոընդունիչների, դաշնամուրների, պատեֆոնների, գորգերի, կահույքի, ավտոմեքենաների, սառցարանների, լվացքի մեքենաների, կարի մեքենաների և այլ ապրանքների վաճառքը բնակչությանը, մի բան, որ խոսում է բնակչության բարեկեցության զգալի բարձրացման մասին։

Մանրածախ ապրանքաշրջանառության աճման հետ մեկտեղ ընդլայնվում է նաև պարենային և արդյունաբերական ապրանքների առևտրական ցանցը այնպիսի չափով, որ ապահովվեն բնակչության սիստեմատիկորեն աճող գնողունակության բավարարումը ու կուլտուրական պահանջները։

Վերջին երկու տարում ռեսպուբլիկայի առևտրական ցանցն ավելացել է 178 միավորով։ Առանձնահատուկ ուշադրություն է դարձվում առևտրական ցանցի մասնագիտացմանը, նրա լավագույն հագեցմանը՝ գնորդներին ավելի լավ սպասարկելու համար։

Եթե մինչև 1952 թվականը առևտրական ցանցի մասնագիտացումը կատարվում էր բացառապես Երևանում և Լենինականում,

ապա 1953 թվականին մասնագիտացված խանութներ են բացվել նաև Կիրովականում, Սևանում, Դիլիջանում, Ստեփանավանում, Նոր Բայազետում, Էջմիածնում և այլն։

Ընթացիկ տարում միայն Հայկական ՍՍՌ Առևտրի մինիստրության գծով նախատեսված է բացել ևս 22 նոր մասնագիտացված առևտրական ձեռնարկություն։

Առևտրական և հասարակական սննդի ցանցը հագեցված է սառցարանային սարքավորումով, որոնց ընդհանուր քանակը այս տարվա սկզբին հասավ 300 միավորի, ինչպես նաև հատուկ առևտրական սարքավորումներով։

Հայաստանի սպառողների պահանջները բավարարվում են քաղաքներում կազմակերպված՝ գործվածքեղենի, հագուստեղենի, կոշկեղենի, կահույքի, կուլտապրանքների մասնագիտացված խանութների միջոցով, որը հնարավորություն է տալիս առևտրական ցանցը լիովին ապահովել ապրանքների լայն ասորտիմենտով՝ գնորդի կողմից ապրանքների լավագույն ընտրություն կատարելու համար։ Այդպիսի խանութները սովետական կուլտուրական առևտրի օջախներ են հանդիսանում։

Գյուղական բնակչությանը հագուստեղե-



նով, կոշկեղենով, գործվածքեղենով, կահույքով, ժամացույցներով, ռադիոընդունիչներով, պատեֆոններով և այլ ապրանքներով ապահովելու պահանջին համապատասխան՝ ընդլայնվում է նաև «Հայկոոպ» սպառողական կոոպերացիայի մանրածախ ցանցը և հասարակական սննդի ձեռնարկությունների ցանցը։

Նախապատերազմյան ժամանակաշրջանի համեմատությամբ զգալիորեն ավելացել է կոլտնտեսություններին և կոլտնտեսականներին վաճառելու համար գյուղ տարվող ապրանքների՝ շինանյութերի, թամբագործական և սայլաշինական առարկաների, բեռնատար ավտոմեքենաների, մոտոցիկլետների, սերզատների, գյուղատնտեսական զանազան ինվենտարի, էլեկտրալամպերի, էլեկտրալուսավորության գործիքների քանակը։ Զգալիորեն ավելացել է նաև մնացած բոլոր տեսակի ապրանքների վաճառքը գյուղում։

ՍՍՌՄ Մինիստրների Սովետի Նախագահ ընկեր Մալենկովը ՍՍՌՄ Գերագույն Սովետի հինգերորդ սեսիայում արտասանած ճառում նշեց, որ արդյունաբերության և գյուղատնտեսության հետագա աճման հետ միասին անհրաժեշտ է ամեն կերպ զարգաց-

նել ապրանքաշրջանառությունը, բարելավել պետական, կոոպերատիվ և կոլտնտեսային առևտրի կազմակերպումը, որը ծառայում է սովետական ժողովրդի շահերին ու պահանջմունքներին: «Սոցիալիզմի ժամանակ առևտուրը,— մատնանշեց ընկեր Մալենկովը,— հանդիսանում է և երկար ժամանակ կմնա սոցիալիստական հասարակության անդամների միջև սպառման առարկաների բաշխման հիմնական ձևը, այն հիմնական ձևը, որի միջոցով բավարարվելու են աշխատավորների անձնական աճող պահանջմունքները»:

Սովետական և առևտրական օրգանների խնդիրն է, հաշվի առնելով բնակչության պահանջները, ճիշտ կերպով պլանավորել ապրանքային ֆոնդերը և բաշխումը, ամեն կերպ ընդլայնել առևտրական ցանցը և այն մոտեցնել սպառողին:

Պարտիական, սովետական և պրոֆմիութենական կազմակերպությունները, մեր բոլոր աշխատավորները պետք է օգնեն առևտրական կազմակերպություններին՝ սովետական կուլտուրական առևտրի հետագա ծավալման համար:

---

ԿԱԶՄԱԿԵՐՊԻՐ ԶՐՈՒՅՑ

# ԱՐՄԱՏԱՎՈՐԵԼ ԳԻՏՈՒԹՅԱՆ ՆՎԱՃՈՒՄՆԵՐԸ ԵՎ ԱՌԱՋԱՎՈՐ ՓՈՐՁԸ ԿՈԼՏՆՏԵՍՈՒԹՅՈՒՆՆԵՐՈՒՄ

Հ. ՄԱԴՈՅԱՆ
Գյուղատնտեսական գիտությունների թեկնածու

Սոցիալիստական գյուղատնտեսության զարգացման գործում վիթխարի նշանակություն ունի առաջավոր փորձի և գիտության նվաճումների արմատավորումը կոլտնտեսություններում, սովխոզներում և մեքենատրակտորային ու մեքենա-անասնապահական կայաններում:

ՍՄԿԿ Կենտկոմի Սեպտեմբերյան պլենումը, կարևորագույն նշանակություն տալով գիտության և առաջավոր փորձի նվաճումների արմատավորմանը, խնդիր դրեց, որ գյուղատնտեսության նորարարների աշխատանքի դրական փորձը արագորեն և վճռականապես արմատավորվի արտադրության մեջ, այն օգտագործելով գյուղատնտեսական կուլտուրա-

ների բերքատվության, անասնաբուծության մթերատվության և մեքենա-տրակտորային պարկի աշխատանքի արտադրողականության բարձրացման համար։

Մեր երկրում ստեղծված են բոլոր անհրաժեշտ և նպաստավոր պայմանները գյուղատնտեսության մեջ առաջավոր փորձը և գիտության նվաճումները արմատավորելու համար։ Բազմաթիվ կոլտնտեսություններ, ՄՏՍ-կայաններ, սովխոզներ, գյուղատնտեսության հազարավոր առաջավորներ, հաջողությամբ կիրառելով գիտության և առաջավոր փորձի նվաճումները, ձեռք են բերել աչքի ընկնող ցուցանիշներ։

Մոսկվայի մարզի Ռամենսկոյեի շրջանի «Առաջ, դեպի կոմունիզմ» կոլտնտեսությունը արդեն մի քանի տարի է, որ կարտոֆիլի ցանքը կատարում է քառակուսի-բնային եղանակով։ Ցանքի այդ եղանակի շնորհիվ մեքենայացվել է կարտոֆիլի մշակությունը, որով և զգալի չափով կրճատվել է աշխատող ձեռքի պահանջը, և կարտոֆիլի բերքատվությունը ավելացել է 2 անգամ։

Վոլոգդայի մարզի «Բուդյոնովեց» կոլտնտեսության խոզաբուծական ֆերմայի վարիչ, Ստալինյան մրցանակի լաուրեատ Ս. Ն. Լուսկովան իր աշխատանքում հմտորեն կիրառե-



լով զոոտեխնիկական գիտության նվաճումները կերերի նախապատրաստման և խոզերի խնամքի ու կերակրման կազմակերպման գործում, ռեկորդային արդյունքների հասավ խոզաբուծության մեջ։ Նա տարեկան 2 ծին է կազմակերպում և շատ խոզամայրերից մեկ տարվա ընթացքում ստանում և անկորուստ աճեցնում է 28—30 և ավելի խոճկոր։ «Բուդյոնովեց» կոլտնտեսության խոզաբուծական ֆերմայում մեկ խոզամայրից ստացված խոճկորների կենդանի քաշը հասնում է մոտ 5000 կիլոգրամի։

Կոստրոմայի մարզի «12-րդ Հոկտեմբերը» կոլտնտեսության անասնապահները տարվա ընթացքում յուրաքանչյուր կովից միջին հաշվով 5—6, իսկ լավագույն կովերից՝ 8—12 տոննա կաթ են ստանում։

Կիևի մարզի Չերկասկի շրջանի Լենինի անվան կոլտնտեսության այն բրիգադան, որի բրիգադիրն է Սոցիալիստական Աշխատանքի Հերոս Դ. Ի. Խարենկոն, 19 հեկտար տարածության վրա յուրաքանչյուր հեկտարից ստացել է 192 ցենտներ պոմիդոր։ Բրիգադան ցանքը կատարել էր 27 սմ. խորությամբ վարված և նախօրոք պարարտացված հողամասում։ Վարից առաջ հողի յուրաքանչյուր հեկտարը պարարտացվել էր 2

ցենտներ սուպերֆոսֆատով և 1 ցենտներ կալիական աղով։ Բացի դրանից, գարնանը բրիգադան հողը փոցխեց և կատարեց նախացանքային կուլտիվացիա։ Սածիլները դաշտ տեղափոխվեցին 45—50 օրական հասակում, ամեն մի հեկտարի վրա տնկելով 28 հազար 600 սածիլ։ Տնկելու պահին սածիլները ջրել են։ Ամառվա ընթացքում կատարել են կուլտիվացիա։

Դ. Խարենկոյի բրիգադան արդեն կիրառում է ցանքի քառակուսի-բնային եղանակը, որը հնարավորություն է տալիս մեքենայացնել ցանքի մշակության աշխատանքները։

Արխանգելսկի մարզի Խոլմագորյան շրջանի «Կարմիր Հոկտեմբեր» կոլտնտեսության հորթապահ Ս. Ի. Սավինովան 15 տարվա ընթացքում աճեցրել է 1650 գլուխ հորթ։ Վերջին 10 տարվա ընթացքում աճեցրել է 1100 տոհմային բարձրարժեք հորթ, չտալով ոչ մի անկում։

Նա նորածին հորթերին պահում է պրոֆիլակտորիայում։ Ծնվելուց 1—1,5 ժամ հետո հորթերին խմեցնում է 1,5—2 լիտր խեժ։ Հորթին, նրա կյանքի առաջին 4—5 օրը, խեժը խմեցնում է 4 անգամ, առաջին օրը՝ 3—4 լիտր, իսկ վերջին օրերին՝ 7—9 լիտր։



Մինչև 10 օրական հորթին խմեցնում է մոր կաթը, իսկ հետո՝ տարբեր կովերի կաթ։ Նորածին հորթերին տրվող անքաշ կաթը հասցնում է մինչև 9—10 լիտրի, իսկ քաշած կաթ տալիս է մինչև 14 լիտր։ Հորթերին տարբեր կերերի սովորեցնում է աստիճանաբար։ Երբ հորթերը դառնում են մեկ ամսական, քաշած կաթի հետ միասին նրանց տալիս է խոտաջուր և խտացրած կերեր։

Մինչև 6 ամսական դառնալը յուրաքանչյուր հորթ միջին հաշվով, իբրև սնունդ, սպառում է 610 լիտր անքաշ, 1100 լիտր քաշած կաթ, 100—110 կգ. խտացրած կեր, 385 կգ. խոտ, 23 կգ. աղ, 1,5 կգ. ոսկորի ալյուր։ Խնամքի և կերակրման գործում նա խստորեն հաշվի է առնում հորթերի առանձնահատկությունները։ Այդ է պատճառը, որ նրա խնամած յուրաքանչյուր հորթի օրական աճը կազմում է 1 կիլոգրամից մինչև 1 կլ. 200 գրամ։

Կիրառելով գյուղատնտեսության աչքի ընկնող վարպետների, առաջավոր կոլտնտեսությունների աշխատանքի մեթոդները, ինչպես նաև իրենց գործնական աշխատանքում հենվելով գյուղատնտեսական գիտության նորագույն տվյալների վրա, մեր ռես-

պուբլիկայի շատ կոլտնտեսություններ և կոլտնտեսականներ նույնպես լավագույն ցուցանիշների են հասել գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվության բարձրացման, անասունների գլխաքանակի ավելացման, նրանց որակական ցուցանիշների լավացման ու մթերատվության բարձրացման գործում։

Շահումյանի շրջանի կոլտնտեսությունները իրենց մոտ արմատավորելով Կոստրոմայի մարզի «Կարավաևո» սովխոզի անասնապահների աշխատանքի փորձը՝ անասունների կերակրման, խնամքի ու պահպանման պայմանների վերաբերյալ, հասան կովերի կաթնատվության բարձրացման, և այժմ շրջանը յուրաքանչյուր կովից ավելի քան 3 անգամ շատ կաթ է ստանում, քան 1949 թվականին։ Դրա հետ միասին, խիստ կերպով կրճատվել է կովերի ստերջությունը և պակասել է անասունների անկումը։

Կոտայքի ՄՏ կայանի մեխանիզատորները սովորական կուլտիվատորները հարմարեցնելով ջրովի ծխախոտի մշակության համար, այս տարի կարողացան մեքենայացնել ջրովի ծխախոտի ցանքերի մշակությունը։ Դրա շնորհիվ ծխախոտի մշակու-



թյան վրա աշխատող յուրաքանչյուր 120 մարդու փոխարեն աշխատում է մեկ կուլտիվատոր։

Հացահատիկային կուլտուրաների մշակության ագրոտեխնիկական կոմպլեքսի ճիշտ կիրառման շնորհիվ Սևանի շրջանի Վարսեր գյուղի կոլտնտեսության այն բրիգադան, որի բրիգադիրն է ընկ. Վանո Հարությունյանը, անցյալ տարի 50 հեկտար ցորենի ցանքի յուրաքանչյուր հեկտարից ստացավ 50,2 ցենտներ բերք։

Կիրովականի շրջանի Սարահարթ գյուղի Չկալովի անվան կոլտնտեսության Նվարդ Քարամյանի օղակը ճակնդեղի յուրաքանչյուր հեկտարից անցյալ տարի ստացավ 437 ցենտներ բերք, պլանով նախատեսված 240 ցենտների փոխարեն։ Օղակի անդամները ցրտահերկից առաջ հողամասի վրա շաղ էին տվել գոմաղբ։ Այս հողամասի վրա կատարվել էր ցրտահերկ՝ 28—30 սմ. խորությամբ։ Վաղ գարնանը նրանք հողամասը պարարտացրել էին քիմիական և տեղական պարարտանյութով։ Այսպիսով, մինչև ցանքը հողամասի յուրաքանչյուր հեկտարին արդեն տրվել էր 25—30 տոննա տեղական և 1,5 տոննա քիմիական պարարտանյութ։

Ցանքից առաջ հողամասը հարթեցվեց, իսկ հետո ցանքը կատարվեց ագրեգատ-

շարքացանով։ Երբ հողից բարձրացան ճակնդեղի ծիլերը, տալով 2 տերև, այն ժամանակ օղակի անդամները կատարեցին առաջին փխրեցումը, ապա սնուցում՝ հանքային պարարտանյութով։ Այդ հողամասում կատարվեց 8 անգամ փխրեցում, որից 3 անգամ տրակտորի կուլտիվատորով։ Սնուցում տրվել է 4 անգամ, ցանքը ակոսային եղանակով ոռոգվել է 6 անգամ։

Կոլտնտեսություններում գիտության և առաջավոր փորձի արմատավորման գործում մեծ անելիք ունեն գյուղատնտեսական կուլտուրայի տները։ Այս տեսակետից օրինակելի աշխատանք են կատարում Ստեփանավանի շրջանի Կուռթան գյուղի Միկոյանի անվան, Կոտայքի շրջանի Քանաքեռ ավանի Օրջոնիկիձեի անվան, Կիրովականի շրջանի Ժդանով գյուղի Ստալինի անվան և ուրիշ կոլտնտեսությունների գյուղատնտեսական կուլտուրայի տները։ Ստեփանավանի շրջանի Կուռթան գյուղի Միկոյանի անվան կոլտնտեսության գյուղատնտեսական կուլտուրայի տունը 1952 թվականին փորձարկեց կարտոֆիլի մի քանի տեսակ և պարզեց, որ իրենց կոլտնտեսության պայմաններում առավել բարձր բերք է ստացվում «Էպրոն» տեսակի կարտոֆիլի ցանքից։ Կոլտնտեսությունը այս



տարի արդեն մեծ տարածության վրա «Էպրոն» տեսակի կարտոֆիլի ցանք է կատարել, որն առատ բերք է խոստանում։

Գիտության նվաճումների և առաջավոր փորձի արմատավորման գործին մեծ չափով նպաստում է կոլտնտեսականների ուսուցումը ագրոզոոտեխնիկական դասընթացներում։

Մեր ռեսպուբլիկայի շատ կոլտնտեսություններում ագրոզոոտեխնիկական դասընթացների ունկնդիրները, իրենց գործնական աշխատանքում կիրառելով դասընթացներում ստացած տեսական գիտելիքները, դարձել են բարձր բերքի վարպետներ։

Գյուղատնտեսության աշխատողների առաջնահերթ խնդիրն է՝ կոլտնտեսություններում ամենաարագ կերպով արմատավորել գիտության նվաճումները և առաջավոր փորձը, որը սոցիալիստական գյուղատնտեսության հաջող զարգացման կարևորագույն պայմաններից մեկն է։

Մեր ռեսպուբլիկայի գյուղատնտեսության աշխատողները պատվով կկատարեն ՍՄԿԿ Կենտկոմի Սեպտեմբերյան պլենումի պատմական որոշումները, որը կապահովի մեր Հայրենիքի գյուղատնտեսության բոլոր ճյուղերի հետագա շեշտակի վերելքը։

---

# ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅԱՆ ԱՐՏԱՔԻՆ ԱՌԵՎՏՈՒՐԸ

## *(ԹՎԵՐ ԵՎ ՓԱՍՏԵՐ)*

*✪ Սովետական Միության կառավարությունը հետևողականորեն վարում է արտասահմանյան բոլոր երկրների հետ, այդ թվում կապիտալիստական երկրների հետ, տնտեսական կապերն ընդլայնելու քաղաքականություն։ Այդ քաղաքականության վառ վկայությունն է առևտրական համաձայնագրերի կնքումը Սովետական Միության և կապիտալիստական երկրների միջև։ Առևտրական համաձայնագրեր են կնքվել Ֆրանսիայի, Ֆինլանդիայի, Իրանի, Դանիայի, Հունաստանի, Նորվեգիայի, Շվեդիայի, Արգենտինայի, Իսլանդիայի, վճարման համաձայնագիր՝ Եգիպտոսի հետ։ Հաջողությամբ բանակցություններ են վարվում մի շարք այլ պետությունների հետ։*

*✪ Իրավահավասարության և փոխադարձ շահավետության հիման վրա զարգանում են առևտրական հարաբերությունները Սովետական Միության և Ֆինլանդիայի միջև։ 1950 թվականին կնքվեց երկու երկրների միջև 1951—1955 թվականներին ապրանքների մատակարարման մասին համաձայնագիր, որից հետո լրացուցիչ համաձայնագիր ստորագրվեց 1952—1953 թվականների ապրանքաշրջանառության մասին։*

*Սովետա-ֆինլանդական առևտուրը հասել է մեծ չափերի։ Ապրանքաշրջանառությունը Սովետական Միության և Ֆինլանդիայի միջև 1951 թվականին (համադրելի գներով հաշված) 9 անգամ ավելի է, քան 1938 թվականին, իսկ 1953 թվականին համարյա երկու անգամ կգերազանցի 1952 թվականի մակարդակը։*

*✪ 1953 թվականի հուլիսի 15-ին ստորագրվել է առևտրական համաձայնագիր և վճարման համաձայնագիր Սովետական Միության և Ֆրանսիայի միջև։ Ապրանքաշրջանառության համաձայնագրի համաձայն, որը կնքված է երեք տարով, սահմանված է յուրաքանչյուր կողմի համար ապրանքների մատակարարումների ծավալը 12 միլիարդ ֆրանկի չափով։*

*Այդ համաձայնագրով Սովետական Միությունը Ֆրանսիա է արտահանելու եգիպտացորեն, անտրացիտ, քարածուխ, քրոմի և մարգանեցի հանքանյութ, նավթ և այլ ապրանքներ։ Դրա փոխարեն Ֆրանսիան Սովետական Միություն է ուղարկելու արհեստական մետաքսի մանվածք և գործվածք, բրդյա գործվածքեղեն, սուրճ, բակլա, ցիտրուսներ, խոզի ճարպ և եթերային յուղեր։ Բացի դրանից, Ֆրանսիան Սովետական Միության համար պետք է կառուցի բեռնա-*

տար նավեր 5 հազար տոննա բեռնատարողությամբ, շոգեկաթսաներ և տրանսպորտային սարքավորումներ։

✪ 1953 թվականի ապրիլի 9-ին ստորագրվեց արձանագրությունը Սովետական Միության և Շվեդիայի միջև ապրանքաշրջանառության մասին։ Բանակցությունները ապրանքափոխանակման մասին անցան բարեկամական և փոխըմբռնման պայմաններում և ցույց տվեցին երկու կողմերի ցանկությունները՝ իրար մեջ առևտրական հարաբերությունները զարգացնելու գործում։

✪ 1953 թվականի հուլիսի 17-ին Սովետական Միության և Դանիայի միջև ստորագրվեց փոխադարձ ապրանքամատակարարման մասին արձանագրություն՝ 1953 թվականի հուլիսի 1-ից մինչև 1954 թվականի հունիսի 30-ը ընկած ժամանակաշրջանի համար։

Այդ համաձայնությամբ նախատեսված է զգալիորեն ընդլայնել փոխադարձ ապրանքամատակարարումը անցյալ տարվա համեմատությամբ։ Սովետական Միությունը Դանիա է ուղարկելու ցորեն, անտառանյութ, քուսպ, պարարտանյութ, չուգուն և ուրիշ ապրանքներ, իսկ Դանիան՝ կարագ, խոզի միս, ծովատառեխ և ուրիշ ապրանքներ։ Բացի դրանից, Դանիան պետք է Սովետական Միության համար կառուցի նավեր և վերանորոգի սովետական նավերը։

✪ 1953 թվականի հուլիսի 28-ին ապրանքաշրջանառության և վճարման համաձայնագիր ստորագրվեց



Սովետական Միության և Հունաստանի միջև՝ մեկ տարի ժամանակով։ Սովետական Միությունը Հունաստան է արտահանում նավթ, անտրացիտ, անտառանյութ և ուրիշ ապրանքներ, իսկ Հունաստանը Սովետական Միություն է ուղարկելու ծխախոտ, բամբակ, բրինձ և ուրիշ ապրանքներ։

✪ Սովետական Միության և Իսլանդիայի միջև ստորագրված ապրանքաշրջանառության և վճարման համաձայնագրով, որը ստորագրվել է 1953 թվականի օգոստոսի 1-ին, Սովետական Միությունը Իսլանդիային մատակարարելու է նավթամթերք, ալյուր, ցեմենտ, մետաղյա իրեր և ուրիշ ապրանքներ։ Իսլանդիան Սովետական Միություն է արտահանելու՝ ձուկ, աղած և սառեցրած ծովատառեխ։

✪ Սրտակից և փոխըմբռնման մթնոլորտում տեղի ունեցան բանակցություններ Սովետական Միության և Արգենտինայի միջև, որոնք վերջացան 1953 թվականի օգոստոսի 5-ին երկու երկրների միջև առևտրական և վճարման մասին համաձայնագրի ստորագրումով։ Ըստ այդ համաձայնագրի՝ Սովետական Միությունը Արգենտինա է ուղարկելու մեծ քանակությամբ նավթ և ածուխ, արդյունաբերական սարքավորում և հումք՝ Արգենտինայի նավթի, քարածխի և էլեկտրաէներգիայի արդյունաբերության համար, երկաթուղային տրանսպորտի սարքավորում, տրակտորներ և գյուղատնտեսական այլ մթերքներ։

*Մեծ է Սովետական Միության ուղարկած ապրանքների նշանակությունը Արգենտինայի տնտեսության, հատկապես սեփական արդյունաբերության զարգացման համար։ Հայտնի է, որ Ամերիկայի Միացյալ Նահանգները հրաժարվում էին Արգենտինային, ինչպես նաև լատինո-ամերիկյան մյուս երկրներին մատակարարել արդյունաբերական սարքավորում, որը անհրաժեշտ էր նրանց սեփական արդյունաբերության զարգացման համար։*

*Արգենտինան Սովետական Միությանը մատակարարելու է բուսական յուղ և բուրդ, որը կազմելու է ամբողջ արտահանվող ապրանքի արժեքի կեսը. բացի դրանից, արտահանելու է խոզի ճարպ, պանիր, մսի պահածոներ, ոչխարի և խոզի միս և ուրիշ ապրանքներ։*

✪ *Սովետական Միությունը հետևողականորեն ու հաստատակամորեն վարել ու կվարի խաղաղության պահպանման և ամրապնդման քաղաքականություն, կզարգացնի համագործակցությունն ու գործարար կապերը այն բոլոր պետությունների հետ, որոնք իրենց կողմից ձգտում են դրան։*

---

ՕԳՆՈՒԹՅՈՒՆ ԱԳԻՏԱՏՈՐԻՆ

# ԹԵՄԱՆԵՐ, ՊԼԱՆՆԵՐ ԵՎ ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

## I

## ՀՈԿՏԵՄԲԵՐՅԱՆ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՄԵԾ ՌԵՎՈԼՅՈՒՑԻԱՅԻ 36-ՐԴ ՏԱՐԵԴԱՐՁԸ— ՀԱՄԱԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՏՈՆ Է

*1. Սովետական Միության Կոմունիստական պարտիայի ղեկավարող և կազմակերպող դերը Հոկտեմբերյան սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի նախապատրաստման և անցկացման ժամանակաշրջանում։*

*2. Հոկտեմբերյան սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի հաղթանակը հանդիսացավ պրոլետարական ռևոլյուցիայի լենինյան թեորիայի հաղթանակը։*

*3. Հոկտեմբերյան սոցիալիստական Մեծ ռևոլյուցիան մարդկության պատմության մեջ բացեց նոր դարաշրջան՝ կապիտալիզմի խորտակման և սոցիալիզմի ու կոմունիզմի հաղթանակի դարաշրջանը։*

*4. Հոկտեմբերյան սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի հաղթանակը հեշտացրեց կապիտալիզմի դեմ միջազգային պրոլետարիատի պայքարը։ Մեր Կոմունիստական պարտիան ազգային ուժից վերածվեց*

միջազգային ինտերնացիոնալ ուժի, համաշխարհային ռևոլյուցիոն և բանվորական շարժման «Հարվածային բրիգադայի»։

5. Կոմունիզմի շինարարության բնագավառում սովետական ժողովրդի ձեռք բերած հաջողությունները։

6. Հոկտեմբերյան սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի համաշխարհային պատմական նշանակությունը։

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Համամիութենական Կոմունիստական (բոլշևիկների) պարտիայի պատմություն, *Համառոտ դասընթաց։ Հայպետհրատ, 1946 թ. գլուխ 7-րդ, էջ 280—293։*

Գ. Մ. ՄԱԼԵՆԿՈՎ— Ճառ ՍՍՌՄ Գերագույն Սովետի հինգերորդ սեսիայում։ *Հայպետհրատ, 1953 թ.։*

Սովետական Միության Կոմունիստական պարտիայի հիսուն տարին (1903—1953 թ. թ.)։ *Հայպետհրատ, 1953 թ.։*

II

## 2. ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ՀԵՏԱԳԱ ԶԱՐԳԱՑՄԱՆ ԾՐԱԳԻՐԸ

1. «ՍՍՌՄ գյուղատնտեսության հետագա զարգացման միջոցառումների մասին» ՍՄԿԿ Կենտկոմի պլենումի որոշումը սոցիալիստական գյուղատնտեսության բոլոր ճյուղերի նոր վերելքի մարտական ծրագիր է։



2. Սոցիալիստական գյուղատնտեսության առավելությունները մանր ապրանքային գյուղացիական տնտեսության և խոշոր կապիտալիստական գյուղատնտեսական արտադրության հանդեպ։

3. Գյուղատնտեսության հետագա զարգացման համար պայքարը՝ համաժողովրդական գործ է։

4. Կոլտնտեսությունում հասարակականի և անձնականի ճիշտ զուգակցումը կոլեկտիվ տնտեսության արտելային ձևի կարևորագույն սկզբունքն է։

5. Արտադրության զարգացման մեջ աշխատողների անձնական շահագրգռվածության սկզբունքը սոցիալիստական տնտեսավարության արմատական սկզբունքներից մեկն է։

6. Սոցիալիստական արդյունաբերությունը և նրա առաջատար դերը ՍՍՌՄ գյուղատնտեսության զարգացման գործում։

7. Մեքենա-տրակտորային կայանները կոլտնտեսային արտադրության զարգացման վճռական ուժն են։

8. Կոլտնտեսությունների կազմակերպական-տնտեսական ամրապնդման գործում ՄՏ կայանների դերի բարձրացումը և նրանց աշխատանքների բարելավումը՝ գյուղատնտեսության հետագա վերելքի գրավականն է։

9. Գյուղատնտեսական հարկի մասին նոր օրենքը և նրա նշանակությունը սոցիալիստական գյուղատնտեսության հետագա վերելքի համար։

*10. Անասնաբուծության վերելքը ամենաանհետաձգելի խնդիրն է սոցիալիստական գյուղատնտեսության զարգացման մեջ։*

*11. Կարտոֆիլի և բանջարեղենի արտադրության ավելացումը՝ սոցիալիստական հողագործության կարևորագույն խնդիրն է և գյուղատնտեսության աշխատողների պարտքը։*

*12. Գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվության և անասնաբուծության մթերատվության բարձրացումը՝ ՍՍՌՄ գյուղատնտեսական արտադրության վերելքի վճռական պայմանն է։*

*13. Սովետական առաջավոր գիտության նվաճումների, հողագործության և անասնապահության առաջավորների փորձի ամեն կերպ տարածումը և արմատավորումը սոցիալիստական գյուղատնտեսության հետագա վերելքի կարևորագույն պայմաններից մեկն է։*

## ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ


ՍՍՌՄ գյուղատնտեսության հետագա զարգացման միջոցառումների մասին ՍՄԿԿ Կենտկոմի Պլենումի որոշումը՝ ընդունված 1953 թ. սեպտեմբերի 7-ին ընկ. Ն. Ս. Խրուշչևի զեկուցման առթիվ: *«Ս. Հ.», 1953 թվականի սեպտեմբերի 13-ի համարը։*

Ն. Ս. ԽՐՈՒՇՉԵՎ.— ՍՍՌՄ գյուղատնտեսության հետագա զարգացման միջոցառումների մասին: Զեկուցում ՍՄԿԿ Կենտկոմի պլենումում 1953 թվականի





սեպտեմբերի 3-ին: *«Ս. Հ.», 1953 թվականի սեպտեմբերի 15-ի և 16-ի համարները։*

Գ. Մ. ՄԱԼԵՆԿՈՎ.— Ճառ ՍՍՌՄ Գերագույն Սովետի հինգերորդ սեսիայում: *Հայպետհրատ, 1953 թ.։*

Օրենք՝ Գյուղատնտեսական հարկի մասին: *«Ս. Հ.», 1953 թվականի օգոստոսի 11-ի համարը։*

ՍՍՌՄ Մինիստրների Սովետի և ՍՄԿԿ Կենտրոնական Կոմիտեի որոշումը «Երկրում անասնաբուծության հետագա զարգացման միջոցառումների և կոլտնտեսականների, բանվորների ու ծառայողների տնտեսությունների կողմից պետությանը անասնաբուծական մթերքների պարտադիր հանձնումների նորմաների իջեցման մասին»: *«Ս. Հ.», 1953 թվականի սեպտեմբերի 26-ի և 27-ի համարները։*

ՍՍՌՄ Մինիստրների Սովետի և ՍՄԿԿ Կենտրոնական Կոմիտեի որոշումը՝ «1953—1955 թ. թ. կոլտնտեսություններում և սովխոզներում կարտոֆիլի և բանջարեղենի արտադրությունն ավելացնելու միջոցառումների և մթերումների մասին»: «Ս. Հ.», 1953 *թվականի սեպտեմբերի 29-ի և 30-ի համարները։*

ՍՍՌՄ Մինիստրների Սովետի և ՍՄԿԿ Կենտրոնական Կոմիտեի որոշումը՝ «Մեքենա-տրակտորային կայանների աշխատանքի հետագա բարելավման միջոցառումների մասին»: «Ս. Հ.», *1953 թվականի հոկտեմբերի 1-ի և 2-ի համարները։*

Գյուղատնտեսական բոլոր կուլտուրաների բարձր բերքի համար: «Պրավդա»-ի *սեպտեմբերի 24-ի առաջնորդողը, տպագրված «Ս. Հ.»-ի 1953 թվականի սեպտեմբերի 25-ի համարում։*

Անասնաբուծության արագ վերելքի շահերի օգտին: «Պրավդա»-ի *սեպտեմբերի 26-ի առաջնորդողը, տպագրված «Ս. Հ.»-ի 1953 թվականի սեպտեմբերի 27-ի համարում։*

*III*

## ՀԱՄԱՄԻՈՒԹԵՆԱԿԱՆ ԼԵՆԻՆՅԱՆ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԵՐԻՏԱՍԱՐԴՈՒԹՅԱՆ ՄԻՈՒԹՅՈՒՆԸ ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅԱՆ ԵՐԻՏԱՍԱՐԴՈՒԹՅԱՆ ԱՌԱՋԱՎՈՐ ՋՈԿԱՏՆ Է ԵՎ ՀԱՆԴԻՍԱՆՈՒՄ Է ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՊԱՐՏԻԱՅԻ ԱԿՏԻՎ ՕԳՆԱԿԱՆԸ՝ ԱՄԲՈՂՋ ՊԵՏԱԿԱՆ ԵՎ ՏՆՏԵՍԱԿԱՆ ՇԻՆԱՐԱՐՈՒԹՅԱՆ ՄԵՋ

(ՀամԼԿԵՄ հիմնադրման 35-ամյակի կապակցությամբ)

*ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ*

Վ. Ի. ԼԵՆԻՆ.— Երիտասարդության միությունների խնդիրները (ճառ Ռուսաստանի Կոմունիստական Երիտասարդության Միության Համառուսաստանյան 3-րդ համագումարում) *2 հոկտեմբերի 1920 թ., Երկեր, հատոր 31, էջ 343—366։*



Ի. Վ. ՍՏԱԼԻՆ.— Ճառ ՀամԼԿԵՄ 8-րդ համագումարում: 16 մայիսի 1928 թ.: *Երկեր, հատոր 11, էջ 74—87։*

Մ. Ի. ԿԱԼԻՆԻՆ.— Երիտասարդության մասին: *Հայպետհրատ, 1944 թիվ։*

Գ. Մ. ՄԱԼԵՆԿՈՎ.— Ճառ ՍՍՌՄ Գերագույն Սովետի հինգերորդ սեսիայում: *Հայպետհրատ, 1953 թ.։*

Ն. Ս. ԽՐՈՒՇՉԵՎ.— ՍՍՌՄ Գյուղատնտեսության հետագա զարգացման միջոցառումների մասին: Զեկուցում ՍՄԿԿ Կենտկոմի Պլենումում 1953 թվականի սեպտեմբերի 3-ին: *«Ս. Հ.», 1953 թվականի սեպտեմբերի 15-ի և 16-ի համարները։*

Սովետական Միության Կոմունիստական պարտիայի կանոնադրություն: *Հայպետհրատ, 1952 թիվ, էջ 28։*

═════

Խմբագրի տեղակալ՝
Գ. ՄՈՒՐԱԴԽԱՆՅԱՆ

*ՎՖ 04796 Պատվեր 967 Տիրաժ 9050*

*Հայպոլիգրաֆհրատի № 2 տպարան, Երևան, Կնունյանցի № 8, 1953 թ.։*